1916 № 11.—Մարտի 6 ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 րուբլի, կէս տարուան 2 ր. 50 կ.։ Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների և հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ր., կէս տարուան 2 ր.։ Արտասահման՝ տարեկան 5 ր., կէս տարուան 3 ր.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արտաշարդեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Պոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։

Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների մասին խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ՀԱՄԵՐԱՇԽՈՒԹԵԱՆ ԱՆՀՐԱԺԵՇՏՈՒԹԻՒՆԸ

—

> Concordia parvae res criscunt, discordia maximae dilabuntur (*Համաձայնութեամբ փոքրիկ գործեր մեծանում են, անհամաձայնութեամբ մեծ գործերը քայքայւում*)։

*Ներկայ արիւնալի համաշխարհային պատերազմը ամենածանր հարուածները հասցրեց տաճկահայ ազգաբնակութեան։*

*Եռուն կեանքը հայ ժողովրդի Հայաստանում դադարեց, չքացաւ... քաղաքներ, գիւղեր աւերուեցին, ամայացան, մնացին ժողովրդի բեկորներ միայն, ցիր ու ցան եղած կանայք, որբ երեխաներ։*

*Ամենայն օր գրեթէ ստացւում են սրտաճմլիկ տեղեկութիւն Հայաստանի զանազան վայրերից նոր կոտորածների մասին, նոր հայ կանանց և երեխաների խմբերի մասին, որ ռուսաց քաջարի զօրքը կամ մեր անձնուէր հայ կամաւորները անձնազոհութեամբ ազատել են քրդերի ձեռքից։ Հայ ազգը կորցրեց իր մի ստուար մասը, զրկուեց տնից-տեղից, կայքից և դիմեց կորստաբեր գաղթականութեան ճանապարհին։*

*Կորուստը մեծ է և չափազանց զգալի. բայց մենք, հայերս, չպէտք է վհատուենք և, համբերութեամբ տանելով համազգային մեծ աղէտը, երբէք չհրաժարուենք մեր գեղեցիկ յոյսերից և լաւագոյն ապագայի մտքից։ Դաշնակից մեծ պետութիւնները, որոնց պէտքէ պատկանի կատարեալ յաղթութիւնը մարդկային չարիք ստեղծող Գերմանիայի դէմ, անշուշտ չեն մոռանալ մի ազգ, որը մեծամեծ զոհեր տուեց և իր թոյլ ոյժերով մինչև այսօր էլ շարունակում է աջակցել իր արիւնով նրանց զէնքի յաջողութեան։*

*Պէտք է յուսալ դաշնակից պետութիւնների վեհանձնութեան վրայ. իսկ մենք ինքներս, աւերումներից ազատ մնացած հայերս էլ, շատ անելիքներ ունենք։*

*Մեզ վրայ է ծանրացած պատերազմից վնասուած մեր եղբայրակիցների ֆիզիքական գոյութեան հոգսը և նրանց ապագան։*

Մեզ վիճակուած կատարելիք գործը մեծ է, վեհ և պատասխանատու։

Մեր ազգի բաղդը աղաղակող կերպով պահանջում է, որ մենք յանուն մեր ազգի բարօրութեան, մոռանանք մեր ներքին խմբակցական, կուսակցական և մինչև իսկ անհատական հակակրութիւնները, երկպառակութիւնները։ Խոնարհենք մեր գլուխը մեր ազգային գաղափարի առաջ, ներշնչուենք մի մտքով, մի զգացմունքով և գիտակցենք, որ մեր տաճկահայ գրկեալ եղբայրների թշուառութիւնը թեթևացնելու, նրանց գոյութիւնը պահպանելը և վերջապէս նրանց ապագայի կանոնաւորումն մեծ չափով կախուած է մեր համերաշխ, ներդաշնակ և եռանդուն գործունէութիւնից։

Այս խնդիրը մեծ կարևորութիւն է ստացել հայկական շրջաններում, նոյն իսկ և արտասահմանում։ Համերաշխութեան բացակայութիւնը մեծ վիշտ է պատճառում մեր նշանաւոր ազգայիններին, որին ապացոյց «Համբաւաբերի» ներկայ համարում տպուած Հայկական ազգային պատգամաւորութեան նախագահ Պօղոս փաշայ Նուպարի նամակը։ Համանման նամակներով նա դիմել է Վեհափառ Կաթողիկոսին և մի քանի անձանց։

Այս դիմումն արժանի է լուրջ ուշադրութեան։

Թող ամեն մի հայ լաւ ըմբռնէ այս գաղափարի վեհութիւնը, և այն ժամանակ իրագործուած կը տեսնենք բոլորին ցանկալի համազգային համերաշխութիւնը։

# Համաշխարհային պատերազմը

### ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Կովկասեան ճակատից այս շաբաթ շատ քիչ տեղեկութիւններ էին ստացւում։ Պաշտօնական հաղորդագրութիւնները շարունակ կրկնում էին, թէ թիւրքերի հետապնդումը շարունակւում է, բայց թէ ինչ ուղղութեամբ կամ ինչ յաջողութեամբ - այդ մասին լռում էին։ Հետապնդման մասին մանրամասնութիւններ չհրատարակելը կարող է բացատրուել նրանով, որ ռուսները ներկայումս իրենց առաջադրած ռազմական ծրագիրներն իրագործուած չեն համարում, ուստի և վախենում թէ մի գուցէ այդ ծրագրների իրագործումը վտանգուեն։

Համաձայն պաշտօնական հաղորդագրութեան, ռուսները ծովամերձ գծի վրայ անընդհատ առաջ են խաղում։ Արդէն եաւ թողնելով Րիզան անցել են Կալապոտամոս գետը և թշնամուն յետ մղել դէպի Տրապիզոն։ Երզնկայի և Բաղէշի գծերից տեղեկութիւններ չեն հրատարակուած, սակայն ի նկատի ունենալով այն հանգամանքը, որ ռուսները վերջին օրերս գերել են 21 սպայ, 336 ասկեարի հետ և խլել թշնամուց երկու լեռնային թնդանօթ—պէտք է ենթադրել, որ այս գծերի վրայ ևս կռիւները շարունակւում են։ Ըստ մասնաւոր տեղեկութիւնների գլխաւոր կռիւները Երզնկայի գծի վրայ են. թիւրքերն ամեն ջանք գործ են դնում կանգնեցնելու ռուսներին, սակայն չեն կարողանում։

Պարսկական ճակատի վրայ ռուսներն արդէն բռնել են Բաղդադի ճանապարհը և գրաւել են Բերինդ քաղաքը, որ գտնւում է Քիրմանշահից 40 վերստ հեռու։ Միջագետքի դաշտը դուրս գալու համար՝ ռուսներին մնում է միայն գրաւել Խանիկին քաղաքի մօտ գտնուած լեռնանցքը, որից յետոյ ռուսները դուրս կը գան Բաղդադի թիւրք զօրքի թիկունքը։ Այժմեանից արդէն ռազմական տեսակէտից կապ է հաստատւում անգլիացիների և ռուսների միջև։

Սպահանի գծի վրայ թիւրք-գերմանական գործակալներն ու նրանց համախոհները բաւական անյարմար կացութեան մէջ են գտնւում շնորհիւ ռուսների անարգել առաջխաղացութեան։ Նրանք արդէն Սպահանից ելել և ապաստանել են Շիրազ, Եզդու և Քերման, սակայն այստեղ էլ, ինչպէս երևում է, նրանց ու բախտիարների միջև արիւնահեղ ընդհարումներ են եղել, այնպէս որ թիւրք-գերմանական գործակալներն այս գծի վրայ ևս իրենց ապահով զգալ չեն կարող։

Եգիպտական ճակատի վրայ թիւրքերը և նրանց միացած բեդուիններն անտանելի կացութեան մէջ են։ Սուրիէից սպասուած օգնութիւնը չի գալիս և չի էլ կարող գալ, որովհետև Ջեմալ փաշայի բանակի մեծ մասը ուղարկւում է հայկական ռազմաճակատը՝ ռուսների դէմ։ Արդէն մի քանի արաբ ցեղապետներ հնազանդութիւն են յայտնել անգլիացիներին։

### ԱՒՍՏՐՕ-ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Արևելեան ճակատում այս շաբաթ գերմանացիները կենդանի գործունէութիւն էին ցոյց տալիս Դուինայի և Ռիգայի գծերի վրայ։ Վերջին գծում նրանք գործի են քաշել նաև ծովային հեռագարկ թնդանօթները, այնպէս որ կարծէք նրանք ծովի վրայ էլ ինչ-որ պատրաստութեան յետևից են։ Մինչև հալոցքները չվերջանան և Վերդէնի խնդիրը չպարզուի՝ այս ճակատում հազիւ թէ լուրջ գործողութիւններ սկսեն գերմանացիք։

Արևմտեան ճակատում նորից Վերդէնն է կռիւների հանգոյցը։ Մի քանի օր առաջ գերմանացիք մի փոքր ինչ մեղմացրել էին իրենց կատաղի գրոհները բերդի դէմ և այս բանից թէ Հաւասի գործակալութիւնը և թէ մեր ռազմագէտներից շատերը այն հապճեպ եզրակացութեան էին եկել, թէ գերմանացիք միանգամայն ուժասպառ՝ դադարեցնում են գործողութիւնները Վերդէնի մօտ։ Սակայն այս վերջին օրերս գերմանացիք նորից վերսկսեցին յարձակումները։

Տարաթուայ սկզբում կռիւը տարածուած էր գերմանական ամբողջ ճակատի վրայ։ Վերդէնի մօտ ֆրանսացիների կենտրոնացումը խանգարելու և միաժամանակ Վերդէնի պատճառով ֆրանսական ռազմագծերի թուլացումը օգտագործելու համար՝ գերմանացիք կռիւներ սկսեցին գրեթէ ամբողջ ճակատի վրայ՝ Լոտարինգիայում, Արգոններում, Շամպանիայում, Արտուայում և Ֆացեալ գծերի վրայ։ Միւս կողմից դաշնակիցները Բելգիայում վճռական գործողութիւնների դիմեցին՝ Վերդէնի դէմ կուտակուած գերմանական զօրքի մի մասը դէպի իրենց քաշելու համար։ Սակայն այս յարձակումներն ու հակայարձակումները բացի իրարից մի քանի խրամատ խլելուց էական արդիւնք չտուին ոչ մի կողմին։

Բուն Վերդէնի շրջանում գերմանացիք մի քանի յաջողութիւններ են ունեցել։ Բերդից հիւսիս-արևելք, Մաասի աջ ափին, նրանք ամրացել են Կոտ դիւ Պուավրի և Դուամոնի բարձունքների վրայ (առաջ միայն աւերել էին Դուամոնը առանց գրաւելու) և Վօ ու Շաննեկ գիւղերի առաջաւոր դիրքերում։ Այս տեղերից նրանք այժմ ռմբակոծում են թէ Վերդէն քաղաքը, թէ Մաասի կամուրջները և թէ այն ճանապարհները, որոնք բերդը մի-

ացնում են թիկունքի հետ։ Միաժամանակ նրանք կատաղի ռմբակոծութեան են ենթարկում Դուամոնից հարաւարեւելք գտնուած Մուլէնվիլ մարտկոցը՝ Վերդէնը հարաւից շրջափակելու դիտաւորութեամբ։ Մաասի ձախ ափին գերմանացիք շարունակում են Վերդէնի հիւսիս-արեւմտեան մարտկոցների ռմբակոծութիւնը։ Այս գծի վրայ գերմանացիք շատ դանդաղ են առաջ շարժւում, շնորհիւ ֆրանսացիների կատաղի դիմադրութեան։ Բայց և այնպէս գերմանացիք յամառաբար շարունակում են կռիւները։ Բոլոր նշաններից երևում է որ գերմանացիք Վերդէնից չեն հրաժարուելու մինչև էական արդիւնքների չհասնելն։ Նրանց հսկայական զոհերը և ռազմական վարկը հրամայօրէն այդ են պահանջում։ Ֆրանսացիների կատաղի դիմադրութիւնը բացատրւում է գլխաւորապէս գերմանացիների այս վարկը ձգելու և նրանց հմայքը զինակից և չէզոք պետութեանց աչքում ոչնչացնելու ցանկութեամբ, որովհետև Վերդէնի անկումից յետոյ էլ Պարիզի և հաշտութեան ճանապարհը փակ պէտք է լինեն գերմանացիների համար։

***

# Ներքին տեսութիւն

Պարիզ, 4 փետրուարի 1916 թ.

## ՊՕՂՈՍ ՆՈՒԲԱՐ ՓԱՇԱՅԻ ՆԱՄԱԿԸ

### ՊԱՐՈՆ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆԻՆ։

—

Պարոն, թէև մինչև օրս հանգամանքները մեզ առիթ չեն տուել տեսնուելու, բայց . . . . . ճանաչելով Ձեզ . . . . . . . . ես կը կամենայի խորհրդակցել Ձեզ հետ որոշ խնդիրների մասին, որոնք ինչպէս և Ձեզ անկասկած նոյնպէս զբաղեցնում են, և որոնց վերաբերմամբ ես գրեցի Վեհափառ Կաթողիկոսին և ուրիշ իմ բարեկամներիս։

Վերջերս ես ստացել եմ բազմաթիւ նամակներ Եւրոպայի և Ամերիկայի մեր գաղութներից, որոնք շատ մռայլ գոյներով են նկարագրում այն դրութիւնը, որ ստեղծել են մանաւորապէս Կովկասի, այն է՝ մեր հայրենակիցների կուսակցութիւնների վէճերն ու կռիւները։ Այդ վէճերը, որոնք մեզ միշտ վնասել են, ներկայումս մեզ պատճառում են աւելի մեծ չարիք, քան երբ և իցէ, շնորհիւ այն չափազանց վատ տպաւորութեան, որ նրանք թողնում են արտասահմանում ոչ միայն մեր ամենաջերմ բարեկամների վրայ, այլ և այն կառավարութիւնների վրայ, որոնք մինչև այժմ ամենանպաստաւոր դիրքն էին բռնում դէպի մեր շահերը։

Ցաւօք սրտի ես ստացայ պաշտօնական շրջաններից նախազգուշացումներ, որոնց անկասկած բարեկամական վերաբերմունքը այնուամենայնիւ չի ծածկում այն վատ տպաւորութիւնը, որ առաջ է եկել շնորհիւ այս կռիւների և այն անուղղելի հետևանքների, որ դրանք կարող են ունենալ։

Յիրաւի կարելի է վախենալ, որ եթէ իրերի ներկայ վիճակը շարունակուի, մենք կամաց կամաց կարող ենք կորցնել այն բոլոր համակրանքը, որ մեր կրած թշուառութիւնների պատճառով ստեղծուել է դէպի մեզ, և որ մեր պաշտպանները ի դէմս բարեկամ կառավարութիւնների կը դադարեն մեր հարցով հետաքրքրուելուց, և այսպիսով մենք ականատես կը լինենք, թէ ինչպէս կանգ է առնում մարդասիրութեան և բարեգործութեան այն թռիչքը, որ համակել է քաղաքակիրթ աշխարհը բուռն ցանկութեամբ՝ նպաստել մեզ և օգնել մեր դատին։

Անչափ ցանկալի կը լինէր, որ գէթ ժամանակաւոր խաղաղութիւն ստեղծուէր։ Եւ դրա համար մեզ անհրաժեշտ է օրինակ վերցնել դաշնակից երկիրներից, ուր ընդհանուր վտանգի առաջ բոլոր կուսակցութիւնները, նոյն իսկ ամենածայրայեղները, լռեցնելով իրենց հակառակութիւնները, յայտարարել են զինադադար իրենց բոլոր կուսակցական բաժանումների, որպէս զի ձուլուեն մի ընդհանուր բլոկի մէջ և կենտրոնացնեն իրենց բոլոր ջանքերը միակ մի նպատակի, այն է՝ հայրենիքի փրկութեան համար։ Անգլիայում բանուորական կուսակցութեան պետը մտել է նոյն մինիստրական կազմի մէջ, որտեղ և պահպանողական կուսակցութեան պետը։ Ֆրանսիայում ծայրայեղ սոցիալիստական կուսակցութեան ներկայացուցիչները կատարելապէս համերաշխօրէն գործակցում են ոչ միայն զանազան հանրապետական կուսակցութիւնների բոլոր երանգների ներկայացուցիչների հետ, այլ նոյն իսկ միապետական կուսակցութեան ներկայացուցիչների հետ, և ես համոզուած եմ, որ դուք կը մտածէք ինչպէս և ես, որ այս ողբերգական ժամին, երբ խօսքը հայկական ցեղի գոյութեան է վերաբերում, պէտք է, որ մենք ևս իրականացնենք այս սրբազան միութիւնը, որը ոչ պակաս անհրաժեշտ է։

Թէև ես ոչ մի առանձին իրաւունք չեմ վերագրում ինձ միջամտել ազգային խնդիրներում, բացի այն յատուկ առաքելութիւնից, որը ինձ վստահացել է Վեհափառ Կաթողիկոսը դաշնակից պետութիւնների առաջ, ես գալիս եմ լոկ իբրև հայ և դրդուած միայն խորին զգացմունքից, որը ես ունեմ դէպի մեր հայրենիքը, կոչ անելու իմ բարեկամներին և նրանց հայրենասիրութեանը։

Քանի որ ես դիմեցի այս խնդրի առիթով Վեհափառ Կաթողիկոսին, ինչպէս և ուրիշ հայ անձանց, որոնք պատկանում են տարբեր կուսակցութիւնների. . . . . . . . . . . . . . .

. . . . Այս պարագաներում ես ինձ պարտք համարեցի դիմել նաև Ձեզ...

Որովհետև դուք էլ կարող էք մեծապէս նպաստել վերջ դնելու այս ծայրայեղութիւններին, որոնք կործանարար են մեզ համար, և կարող էք աջակցել հաստատելու այդ բաղձալի միութիւնը, որը միայն կարող է՝ պահելով դէպի մեզ դաշնակից պետութիւնների համակրանքը և հովանաւորութիւնը, հնարաւոր կը դարձնի ապագայում մեր օրինաւոր պահանջների իրագործումը։

Ընդունեցէք, պարոն, իմ ջերմ համակրանաց հաւաստիքը։

Պօղոս Նուբար։

## ՊԵՏԱԿԱՆ ԿԵԱՆՔ

—

Բիւջէտային ընդհանուր վիճաբանութիւնները վերջացել են Պետական Դումայում և այժմ քննւում են բիւջէտի մանրամասնութիւնները, այսինքն այն մասերը, ուր առանձին իւրաքանչիւր մինիստրութեան բիւջէտներն են որոշուած։

Փետրուարի 18-ին Դումայի անդամներից երկուսը մի վերին աստիճանի կարևոր հարց բարձրացրին, այն է՝ որ ցանքսերի տարածութիւնը պակասում է, ասել է, ուրեմն, որ ցորենի և այլ արմատիքների քանակութիւնը պետութեան մէջ պակասում է, մի հանգամանք, որ վտանգաւոր է ազգաբնակութեան և բանակի պարենաւորման տեսակէտից։ Այդ յայտարարութեան պատասխանեց երկրագործութեան նոր մինիստր Նաումովը, որ հաստատեց ցանքսերի պակասման փաստը և մի շարք հետաքրքրական տուեալներով լուսաբանեց այդ դրութիւնը։ Ռուսաստանը, ինչպէս յայտնի է, գերազանցօրէն հողագործական երկիր է և հացաբոյսերի մշակութիւնը նրա ազգաբնակութեան տալիս է 9 միլիարդ ռուբլի։ Պատերազմի հետևանքով պակասել են բանուորական ձեռքերը և անցեալ տարին, ճիշտ որ, ցանքսերը պակաս են եղել քան նախանցեալ տարին։ 1910—1913 թուականներին միջին թուով ստաց-

ւում էր տարին $4^1/_2$ միլիարդ պուդ հացահատիկներ, մինչդեռ 1914-ին ստացուել է $4^1/_4$ միլիարդ պուդ։ 1913 թուին ցանքսերի ընդհանուր տարածութիւնը կազմում էր 91 միլիոն դեսեատին, մինչդեռ 1914 և 1915 թուերին այդ քանակութիւնը իջել է 82 միլիոն դեսեատինի։ Պակասել է, ուրեմն, 10,3 տոկոս ցանքս։ Այս, ի հարկէ, զգալի պակաս է, բայց մինիստրը ապահովեցնում է որ հացի ընդհանուր պաշարը Ռուսաստանում, այնուամենայնիւ, դեռ բաւական է մի տարուայ համար ևս։ Հացի սուր պակասութեան ուրուական չը կայ Ռուսաստանի առջև։ Եւրոպական Ռուսաստանը եթէ չը կարողանայ էլ սովորական չափերով հացահատիկներ արդիւնաբերել, կայ Սիբիրը իր անհուն պաշարներով։ Եւ եթէ ներկայումս պետութեան զանազան մասերում հացի սղութիւն է զգացւում, դրա պատճառը հաղորդակցութեան անկանոնութիւնն է։ Ակմոլինսկի նահանգի միայն մի գաւառում ցորենի առատ պաշարներ կան և պուդը 40 կոպէկով էլ չեն կարողանում ծախել։ Միայն այդ ցորենով կարելի է կերակրել ամբողջ Եւրոպական Ռուսաստանը։ Բայց դրա համար հարկաւոր է շինել 300 վերստ երկարութեամբ մի երկաթուղի, որ միացնէր այդ գաւառը Սիբիրի երկաթուղու հետ։ Մի խօսքով, 1916-ի հացը 1915-ից վատ կը լինի, բայց և այնպէս Ռուսաստանը կունենայ իր հացը։ Կառավարութիւնը ձեռք է առնում միջոցներ՝ բանուորական ձեռքերը բազմացնելու համար։ Ներկայումս Ռուսաստանում 700 հազար գերի զբաղուած են առաջնակարգ անհրաժեշտ աշխատանքներով և դրանցից 260 հազարը գիւղատնտեսական աշխատանքների են յատկացուած։ Բացի դրանից, 260 հազար զինուոր Բարձրագոյն հրամանով թոյլտուութիւն են ստացել գիւղատնտեսական աշխատանքներին մասնակցելու։ Եթէ աւելացնենք այդ թուերին արևմտեան նահանգներից եկած փախստականներին, աշխատող ձեռքերի թիւը կը հասնէ մի միլիոնի։

Մինիստրը խօսեց և մսի պակասութեան մասին։ Ռուսաստանում սովորական ժամանակն էլ տնային անասունների թիւը շատ մեծ չէր։ 1913 թուին կար ընդամենը 52 միլիոն գլուխ եղջիւրաւոր անասուններ։ Այդ քանակութեան տարեկան աճելութիւը կազմում էր 9 միլիոն գլուխ, որ և գործ էր ածւում ազգաբնակութեան կերակրի համար։ Պատերազմի սկզբից բանակը իր պէտքերի համար գործ է ածում տարեկան 5 միլիոն գլուխ անասուն, ուրեմն ազգաբնակութիւնը և զօրքը գործ են ածում տարեկան 14 միլիոն։ Եւ որովհետև տարեկան աճելութիւնը միայն 9 միլիոն է, պարզ է որ այդ 5 միլիոնը վերցւում է անասունների ընդհանուր թուից, այսինքն 52 միլիոնից։ Այս գումարից պէտք է դուրս գալ էլի 4 միլիոն գլուխ, որ անցեալ տարի կորցրեցին արևմտեան նահանգների հետ միասին։ Ամենածանր հարուածը, որ հասցրել է պատերազմը գիւղական տնտեսութեան, հէնց այս է։ Այս հարուածը բուժելու համար ծրագրուած են մի քանի միջոցներ. տաւարի մսի տեղ ոչխարի միս գործ ածել, զարգացնել ձկնորսութիւնը և այլն։

Պետական Դուման համակրութեան ջերմ արտայայտութիւններով ընդունեց մինիստր Նաումովի յայտարարութիւնները։

Փետրուարի 25-ի նիստում Դումայի սոցիալ-դեմոկրատիական ֆրակցիան մտցրեց հարցում, որ ուղղուած էր Կովկասի Փոխարքային և ներքին գործերի մինիստրին Բաքւում տեղի ունեցած անկարգութիւնների մասին։ Բանն այն էր, որ Բաքւում հաստատուել էր գեներալ-նահանգապետութիւն, հրատարակուել էին պաշարման դրութեան համապատասխանող արտակարգ կանոններ, բայց թէ ինչ էր պատահել և ինչ էր պատճառը—այդ մասին ոչինչ չէին հաղորդում լրագիրները։ Ուստի սոցիալ-դեմոկրատները հարց էին տալիս Փոխարքային և մինիստրին. 1) յայտնի՞ էին նրանց Բաքուի գեներալ-նահանգապետի արտակարգ կարգադրութիւնները և ինչ հանգամանքների հետևանքով են նրանք հրատարակուած. 2) ինչ են նրանք մտադիր ձեռնարկելու կեանքի սովորական պայմանները Բաքւում վերականգնելու համար։ Այս հարցման առիթով խօսեցին Կովկասի պատգամաւորներից Ջափարովը, Սկոբելեվը և Գապաջանեանը, նկարագրելով, իրանց լսած տեղեկութիւնների համեմատ անկարգութիւնների բնաւորութիւնը։ Դուման միաձայն ընդունեց հարցումը...։

Հետևեալ օրը Փոխարքայի ներկայացուցիչը կարդաց Դումայում իր ստացած ընդարձակ հեռագիրը, որի մէջ Նորին Բարձրութիւնը տեղեկութիւններ էր տալիս Բաքուի դէպքերի մասին։ Դուման ընդունեց այդ հեռագիրը։

---

## ԷՐԶՐՈՒՄԻ ԱՆՑԵԱԼԻՑ *)

### Ե

### ՎԵՐԱԾՆՈՒԹԻՒՆ

Հայկական կենտրոնի նշանակութիւնը չը կորցրեց Էրզրումը, որովհետև նուազած հայ ազգաբնակութիւնը սկսեց էլի աճել, բազմանալ, այնպէս որ 1870-ական թուականների սկզբին համարեա դարձեալ հասել էր իր նախկին քանակին.—միայն արական սեռի հայերի թիւն էր 9,000։

Այդ ժամանակներից էլ Էրզրումի հայութիւնն սկսում է առանձնապէս գործօն դեր ունենալ թիւրքահայ կեանքի մէջ և այս կողմից նրա դիրքը առաջնակարգ էր գաւառական բոլոր կենտրոնների համեմատութեամբ։ Այս երևոյթի պատճառներից մէկն էլ, անշուշտ, այն էր, որ հայերի կեանքն այս խոշոր վարչական կենտրոնում համեմատաբար աւելի բարեկեցիկ էր, աւելի անդորր, քան, օրինակ, Վանում կամ Մուշում։ Այստեղ քրդական վայրենութիւնն այն աստիճան տիրապետող, այն աստիճան ամեն ինչ կլանող չէր, ինչպէս տարաբախտ Տարօնում և Վասպուրականում։ Մնալով հանդերձ թիւրքական իրականութիւն, Էրզրումը միջոց և հնարաւորութիւն էր տալիս որ հայերի մէջ կազմուի մտաւորականութիւն, տոգորուած իր ազգի շահերի պաշտպանութեան հերոսական գաղափարով։ Եւ այս կարողութիւնը Էրզրումի հայութիւնը ցուցադրեց 1877-ին, երբ Օսմանեան սահմանադրութիւնն առաջին անգամ երեսփոխանական ընտրութիւններ էր կատարում իր պարլամենտի համար։ Թիւրքիայի բոլոր ազգերը քաղաքական հասունութեան քննութիւն պիտի բռնէին։ Եւ հայերը պատուաւոր տեղ բռնեցին այդ քննութեան մէջ։ Նրանք բարձր հանդիսացան նոյն իսկ թիւրքերից։ Հայ երեսփոխանները, չը նայած իրանց թուական նուազութեան, առաջնակարգ դեր էին կատարում պարլամենտի մէջ իրանց հռետորական և քննադատական ընդունակութիւններով։

Բայց հայ երեսփոխանների մէջ էլ աչքի ընկնողները Էրզրումի երկու ներկայացուցիչներն էին—Դանիէլ Խարաճեան և Համազասպ Պալլարեան։ Այս վերջինը մանաւանդ, Պալլարեան, պատիւ էր բերում ոչ միայն իր քաղաքի հայ համայնքին, այլ և ամբողջ թիւրքահայութեան։ Նա համարձակութիւն ունէր անվախօրէն քննադատելու թիւրք պաշտօնեաներին։ Նա էլ մեծագոյն համարձակութիւնն ունեցաւ առաջին անգամ, թիւրքական բարձր հիմնարկութեան մէջ, հրապարակով խօսել հայերի տանջանքների մասին Հայաստանում։ Եւ այդ՝ այնպիսի մի ժամանակ, երբ Հայոց Հարցը պաշտօնապէս չէր էլ յարուցուած, երբ դեռ Ներսէս պատրիարքը վարանումների մէջ էր։

Պատմական է Պալլարեանի խօսքի նշանակութիւնը։ Նա մատը դնում էր Հայաստանի դարաւոր խոցի վրայ և թիւրք պաշտօնեաների երեսին խփում էր որ եթէ քրդերը տանջում, հարստահարում են հայերին, պատճառն այն չէ, որ նրանք շատ են ուժեղ, այլ այն է, որ այդպէս է կամենում թուրք կառավարութիւնը։

Ռուս-թուրքական պատերազմի ժամանակն էր։ Շէյխ-Ջալալէդդինի, Շէյխ-Ուբէյտուլլահի արշաւանքները դէպի Բայազիտ։ Աղբակից սկսած մինչև Բագրևանդ հայութիւնը արիւն էր լացում։ Այդ զարհուրելի տանջանքներն էին որ այնպիսի կրակոտ շեշտե-

*) Տես «Համբաւաբեր» № 10։

րով ողբացել է Խրիմեան Հայրիկն իր «Հայգոյժի» մէջ։ Բայազիտում տեղի ունեցաւ հայերի կոտորած, որից քաշնում էին ռուս զինուորականները, ականատես լինելով պաշարուած միջնաբերդից։ Լուռ էր Կ. Պոլսի հայոց պատրիարքարանը. Ազգային ժողովի նիստերի մէջ ոչ ոք չէր համարձակւում ծպտուն անգամ հանել այդ սարսափների մասին։

Այդ միջոցին նիստեր ունէր և Օսմանեան պարլամենտը։ Յունիսի 18-ի նիստում խօսք եղաւ հայերի մասին։ Եւ սկսողը մի յոյն էր, Սիւլիդէս անունով։ Ահա ինչ ենք կարդում «Մասիսի» մէջ.

«Սիւլիդէս էֆէնտի խօսք առնելով երկար ատենաբանութեամբ մը բացատրեց Ասիոյ մէջ քրտաց երեսէն հայոց կրած անթիւ աղէտները ու չարիքը, ըսելով թէ ինչ գեղծումներ որ գործուեցան Րումէլիի և Պուլղարիոյ մէջ, նոյնը գործուելու վրայ է երկար ատենէ իվեր քրտաց ձեռօք Հայաստանի մէջ։ Սակայն յոյները և պուլղարք Եւրոպիոյ մէջ տեսրակներ հրատարակելով և բողոքոյ ձայներ բարձրացնելով, Եւրոպիոյ ուշադրութիւնն իրենց կրած տառապանաց վրայ հրաւիրեցին, մինչդեռ հայերը զուրկ ըլլալով այդ միջոցէն, լռութեամբ տարին և հանդուրժեցին իրանց կրած դառն տառապանաց։ Բայց միթէ արդարութիւն է որ հայը, տէրութեան ամենէն աւելի հնազանդ և հաւատարիմ հպատակ ազգն, այսպէս չարչարուի և կեղեքուի նոյն իսկ մեր տէրութեան դէմ ապստամբող քրտաց ձեռօք։ Ուստի և այս անտանելի վիճակին վաղ ընդ փոյթ վախճան մը դրուիլ կառաջարկէ»։

Խօսքը տրւում է Պալլարեանին։

«Կարնոյ երեսփոխան Պալլարեան Համազասպ էֆէնտի,—գըրում է «Մասիսը»—խօսք առնելով ընդարձակ բացատրութիւն մը տուաւ Շահ Հիւսէյինի որդւոյն, Հիւսէյին պէյի, Մշոյ ծիպրանցի քիւրտերուն, Վանայ հայտարանցի Ալիի և խել մը ուրիշ վրանաբնակ քրտերու և աշիրաթներու գործած չարեաց վրայ։ Համազասպ էֆէնտի հետեւեալ դիտողութիւնն ալ ըրաւ. «Ասոնց գլխաւորներն, ըսաւ, երբեմն կը բռնուէին և կը բանտարկուէին, բայց շատ չանցած թող տրուելով, ալ աւելի եւս կատաղութեամբ իրենց առջի անգթութիւնները ձեռք կառնուին։ Վալիներէն և միւթէսարըֆներէն շատեր ալ կան որք այդ քրտաց գործակից և մասխոհ գտնուած են, որոց անունը հարկ չեմ տեսներ, ըսաւ, այժմ յայտնապէս յիշատակելու։ Իսկ շատ աղէկ գիտեմ որ այդ քրտերուն ազատ թող տրուելու ամեն անգամ 10000 ոսկիի կլլար իրենց։ Երբ կը հարցնէի կուսակալներուն, կը յարէ ատենաբանը, թէ ինչու քիւրտերը չեն պատժուիր, որոնց համար երկու վաշտ զօրք բաւական է, և այսպէս անպատիժ թոյլ կը տրուի որ շարունակեն իրենց չարագործութիւնները, կը պատասխանէին ինձ թէ այս գործոյն մէջ հ ի ք մ է թ ի հ ո ւ ք ի ւ մ է թ կայ (այսինքն պետական գաղտնիքն, պատճառ կամ շարժառիթ, որոց բանալին տէրութիւնն իրեն վերապահած է ըսել է)։ Վերջէն խելամուտ եղայ թէ ինչ է եղել այդ պետական գաղտնիք բառծնին. այդ հ ի ք մ է թ ը սա է եղեր թէ՝ կառավարութիւնն անոր համար այդ վիճակին մէջ կը պահէ եղեր քիւրտերը, որ եթէ հայերը Հայաստանի մէջ ապստամբական շարժում մը ընեն, քիւրտերը զանոնք զսպեն, և մէկ մըն ալ որ քիւրտերը, երբ պատերազմ բացուի Ռուսիոյ դէմ, Օսմանեան բանակին իբրև կամաւոր զօրք՝ օգնութիւն պիտի ընեն եղեր։ Ահա հիմա յայտնապէս տեսնուեցաւ թէ այդ քիւրտերն ո՞ր տէրութեան պիտի օգնէին, որո՞ց զօրքերն են եղեր. այն քիւրտերն, որք խաղաղութեան ժամանակ անպատիժ կերպիւ և անխղճօրէն հայերը չարչարեցին և կեղեքեցին, հիմա ալ պատերազմի ժամանակ տէրութեան մատնութիւն և դաւաճանութիւն (խայինլըգ) կընեն։ Ասոնք իրենց ո՞ր օգտին և ո՞ր յառկութեանցը համար արդեօք այսքան պաշտպանութիւն գտած էին Հայաստանի բնակչաց մինչև արիւնը ծծելու չափ, ահա այժմ յայտնի եղաւ անոնց ապերախտ և վնասակար ժողովուրդ մը ըլլալն, որոց չարեացն ու աղէտիցն վախճան մը տալու համար անմիջական միջոցներ ձեռք առնուլ հարկ անհաժեշտ է» *)։

*) «Մասիս» 1877 թ. 1985։

Իզուր չէր որ Էրզրումցին էր առաջին անգամ ի լուր աշխարհի խօսում թիւրքահայերի աղէտալի կացութեան մասին։ Էրզրումը այնուհետև էլ առաջնակարգ դեր է գրաւում տանջուող հայութեան դատը պաշտպանելու մէջ։

(Կը շարունակուի) Լէօ

## ՓԱԽՍՏԱԿԱՆ ԱՐՀԵՍՏԱՒՈՐՆԵՐԻ ՊԱՐԱՊՄՈՒՆՔՆԵՐԸ

Ինչպէս յայտնի է, Կ. Հ. Բ. Ընկերութեան կից Կենտրոնական Կոմիտէի 200 ռ. նպաստով մի խումբ տիկիններ ու պարոններ փախստական օրիորդների և կանանց համար ժանեակ-ձեռագործ կազմակերպեց, որով վերջիններիս աւելի պատշաճ եղանակով ապրուստի միջոց հայթայթեց և կարճ ժամանակում ցուցահանդէս կազմակերպեց, որ արժանացաւ առանձին ուշադրութեան։ Այնուհետև ոչ միայն Թիֆլիսի ունեոր տիկիններից մեծ քանակութեամբ պատուէրներ ստացուեցին, այլ և երկու մայրաքաղաքներից ու Նոր-Նախիջևանից։ Անմիջապէս պահանջ զգացուեց ընդարձակ արհեստանոց բանալու, որպէսզի նաև ուրիշ տեսակ ձեռագործներ պատրաստուէին և սովորելու ցանկութիւն ունեցող տեղահան եղած օրիորդներին բաւարարութիւն տրուէր։ Կ. Կոմիտէն ամսիս 18-ի նիստում լսեց և ընդունեց այս գործը կազմակերպող անձերի առաջարկութիւնը, աւելի նիւթական միջոց ընձեռելու, որով և այսուհետև այս ձեռնարկութիւնը նրա սեկցիայի գործ է համարուելու։

Թէև ուշ, սակայն բարեյաջող ելք ունեցաւ նաև ոսկերիչների արհեստանոցի բացման գործը։ Հ. Կենտր. Կոմիտէն խոստացել էր 3,000 ռ., երբ շահագրգռուած ոսկերիչները տեղեկութիւն ստացան, որ Նպաստամատոյց ընկերութիւնն էլ 15,000 ռ. է ստացել կառավարութիւնից նմանօրինակ արհեստանոցներ բանալու համար։ Բնականաբար միացման խնդիր ծագեց և երկու կողմերի ներկայացուցիչները փոխադարձ համաձայնութեամբ գործելու գրաւոր հիմունքներ կանոնադրութեան ձևով մշակեցին թէ իրենց և թէ իրենց ու արհեստաւորների յարաբերութիւնների համար։ Պ. Ա. Մելիք-Ազարեանցն էլ իր նոր շէնքի մէջ սիրայօժար մի ընդարձակ կրպակ յատկացրեց արհեստանոցին, որ ամսիս 27-ին բացուեց առժամանակ 26 ոսկերիչ և փորագրիչ արհեստաւորների համար։ Ձեռնարկութեան զուտ վաստակը պիտի ստանան արհեստաւորները համապատասխան իրենց հմտութեան աստիճաններին։ Արհեստաւորները բաժանուել են խմբակցութիւնների և պիտի բանեն գլխաւոր վարպետի ղեկավարութեամբ։ Այս գործը կազմակերպող Յանձնաժողովին է վերապահւում վերին հսկողութիւնը իր նշանակած առանձին կառավարչի աջակցութեամբ։ Յանձնաժողովի անդամներից մէկը պիտի կատարէ գանձապահի պաշտօնը, իսկ կառավարիչը պէտք է նաև հաշւապահութիւն անէ։

Գործիս ձեռնարկուները յոյս ունին Զատկական տօներին ցուցահանդէս կազմակերպելու, մինչ այդ՝ հասարակութեանը դիւրութիւն կտրուի ծանօթանալու այս գործին։

Կառավարութիւնը շատ հետաքրքրուած է փախստական արհեստաւորների արդիւնքներով, նիւթական միջոցներ չի խնայում արհեստանոցներին, միայն թէ վարչական բարձր շրջաններից առաջարկութիւն է եղել արդիւնքները ցուցադրելու և վաճառելու մի որոշ յարմարաւոր կենտրոն նշանակուի։ Դիտաւորութիւն կայ բոլոր արհեստանոցների արդիւնքները ցուցադրել Մանթաշեանի Գանովսկայա փողոցում գտնուած տանը։

Յ. Տէր-Միրաքեան

## ԳԱՒԱՌ

*ԳԱՂԹԱԿԱՆՆԵՐԸ ԲԱՐՈՒԽԱՆՍԱՐԱՅԻ ՇՐՋԱՆՈՒՄ.* — Մեր գիւղը, որպէս կեդրոն, իւր մէջ բացած անդաստու կայանում կերակրում էր եկած փախստականներին և ճանապարհում իրանց համար նախապէս յատկացրած դարդոտ հայ գիւղացու դարդոտ խրճիթները։

Հայ գիւղացին—պատիւ իրեն, գրկաբաց ընդունեց իւր փախստական եղբօրը, տաճկի ու քրդի սրից ու հրից ճողոպրած որդեկորոյս մօրը, դալկացած, ոսկրացած մանկանցն ու աղջիկներին։ Թշուառը թշուառի ծոցումն է սփոփանք գտնում։

Հայ գիւղացին պահ մի մոռացաւ իւր ցաւը, սփոփեց, խնամեց իւր եղբօրը. մէկը իւր սենեակի դռները բացեց, միւսը իւր ննջարանումն ընդունեց, երրորդը իւր գոմը չմերժեց և այսպէս կամաց կամաց կմախք դարձածները տեղաւորուեցին Վ. Աղդանում 340 հոգի, Բարուխանսարայում 240, Թալայում 100, Խաւարաձորում 21, Բրդեանում 60, Խաչթառակամ 149, Աչաջրում 187, Կունէնում 60, Սև-Քարում 422։ Ընդամենն 1579 հոգի։

Յունուար ամսից պետութեան կարգադրութեամբ Կունէն, Խաւարաձոր և Բրդեան գիւղերի գաղթականները տեղափոխուեցին Ուզունթալա գիւղը։

Դեռ աշնան սկզբներին քաղաքների միութեան լիազօրը ընտրեց 24 հոգուց բաղկացած մի մարմին ամեն խաւերից։

Սակայն իրականութիւնը ցոյց տուաւ, որ սրանց վերաբերւում էին ոմանք, իսկ շատերը միանգամայն անտարբեր մնացին, և կամաց կամաց այդ մարմինը ինքնին չքացաւ։ Քաղաքների միութեան լիազօրը ուղարկեց գիւղս որպէս կառավարիչ գաղթականների պ. Ս. Մանդրոսեանին, որը պէտք է անձամբ բաժանէր գիւղերի գաղթականներին ալիւր, շաքար, բրինձ, գետնախնձոր, աղ, թէյ։ Բայց պարոնը անկարող էր բոլոր գիւղերինը անձամբ բաժանել, ուստի յանձնարարում էր ուրիշներին բաժանման գործը։

Մինչև գիւղումս Բ. Մ. հաշուին հիւանդանոցի տները պատրաստելը գաղթականների համար ժամանակաւորապէս տեղիս Կ. Հ. Բ. Ը-թեան ճիւղի շինութիւնը յատկացուեց, ուր առանձին հոգատարութեամբ խնամւում էին շրջանի գիւղերից եկած հիւանդները, որոնց թիւը այժմ 28 է, որոնք տեղափոխուած են առանձին շէնք, ինչպէս և վարակաւոր հիւանդներ 7 հոգի սոյնպէս առանձին բնակարանում։ Հիւանդանոցը ունի մի բժիշկ, 2 ֆելդշեր, 5 գթութեան քոյր, 7 սիդելկաներ, 2 խոհարար, 2 լուացարար, 5 ծառայ, մի կառավարիչ։

Ֆելդշերներից մինն և գիւղերն է շրջում պարբերաբար։

Կ. Կոմիտէն և Կ. Հ. Բ. Ը-թեան խորհուրդը հոգատարութիւն էր դարձնում գաղթականներին խնամելու և տեղական իւր ճիւղի մասնակցութեամբ գոհացրեց գաղթականներին՝ տների պակասները լրացնելով, դուռ, պատուհան, ապակի, վառարան, փայտ և այլն տալով, ապա շորեր բաժանելով։

Շորերի բաժանման գործում վարչութեանը օգնել են տ. Ս. Սարակիւեան և օր. Ե. Էգիլեան, որոնց արածը գովասանքից վեր է։ Վարչութիւնը վերոյիշեալների անմիջական հսկողութեամբ կարել տուաւ մեծ քանակութեամբ վերմակներ և դոշակներ, շատ չափաւոր գներով և Կ. Կոմիտէից ստացուած վերմակների հետ բաժանեց բոլոր գաղթականներին վերմակներ, ներքնակներ, բալիշ, շորեր և այլն։ Պէտք է ասած, որ վերմակները շատ էին ստացել, իսկ ներքնակներ՝ սակաւ։

Այս պակասները լրացաւ ամերիկացի մարդասէրների բերած տաք հագուստներով, որը բաժանուեց վարչութեան և կառավարչուհիների ձեռքով դոք. Մակկալումի ներկայութեամբ։ Եւ նա այնքան գոհ մնաց բաժանման ձևից, որ յանձնեց վարչութեան այսուհետև իրանց ուղարկելիք շորերը կամ մթերքները։

Պէտք է արձանագրել, որ մինչև 1915 թ. նոյեմբերի 20-ը Բ. Միութիւնից էին ստանում գաղթականները ուտելիք, որ բաւարար էր, իսկ այնուհետև տրւում էր պետութիւնից, օրական 1 ֆ. 32 մսխալ ալիւր և 7 կամ 9 կոպ. մի հոգուն, որը սակայն չի բաւականացնում։

Մեր շրջանի գաղթականները երբէք հագուստով և գլխարկներով չեն տարբերւում տեղացիներից, թէև ոմանք դեռ նախամեծարութիւնը «երկրի» շորերին են տալիս և դժուարութեամբ են փոխում։

Ամսիս սկզբին բացուեց գիւղումս որբանոց տեղիս Կ. Հ. Բ. Ը-թեան շինութեան մէջ, որին կից վարձուած է և այլ շինութիւն 100 որբի համար։

Գաղթականները տեղաւորուելուց յետոյ երբ հանգիստ զգացին իրենց, սկսեցին պսակուել. ոչ մի գիւղ ազատ չմնաց այդ ծէսից. ի դէպ է ասել, որ հայ գաղթականը չէ կարող հանդուրժել անպսակ կին ունենալու տգեղ սովորութեան, որ ռուսահայերի մէջ սովորական է դառնում։ Գաղթականները Խաչի և Աւետարանի առաջ հաստատում են ամուրի և այրի լինելը։ Տեղական քահանաները, ի պատիւ իրենց, պսակը, ինչպէս և միւս արարողութիւնները, կատարում են ձրի։

Մեսրոպ քհնյ. Էգիլեան

* * *

*ԱԽԱԼՑԽԱ*, 20 փետրուարի.—Ամսիս 16-ին տեղի ունեցաւ Ախալցխայի սպառողական «Помощь» ընկերութեան բաժնետէրերի ընդհանուր ժողովը՝ ընկ. 1915 թուի ելևմուտքի հաշիւը քննել-հաստատելու և վարչութեան երկու անդամներ ընտրելու։ Ելևմուտքի հաշուից երևաց, որ յիշեալ տարում ընկերութիւնը մուտք է ունեցել 19,793 ռուբլի 03 կոպէկ, իսկ ելք՝ 19,151 ռ. 70 կոպէկ, մնացորդ 641 ռ. 33 կոպէկ, որը ժողովը հաստատեց։

Վարչութեան բացատրութիւնից երևաց, որ ներկայ պատերազմի պատճառով առաջացած ճանապարհների և երկաթուղու ստէպ ստէպ ապրանքներ չընդունելով, վնասել է ընկերութեան առևտրական շրջանառութեանը։ Վարչութեան երկու նոր անդամներ ընտրեց՝ Խաչ. Թէխմիշեանին և Լևոն Բրթեանին, իսկ անձնափոխանորդ՝ Ս. Բթեանցին։

„Помощь» ընկերութիւնը առայժմ բաւականանում է միայն քաղաքումս նաւթ վաճառելով, իսկ երբ քիչ-շատ միջոցները ընդարձակեց մտադիր է ուրիշ մթերքներ էլ վաճառել և գործը ընդարձակել, Ընկերութեան շնորհիւ քաղաքումս այսպիսի գների բարձրացած ժամանակ, կերոսինը վաճառւում ֆունտը 5—6 կոպէկի, որով առնում գներն արհեստականօրէն բարձրացնելու առաջը։

— Փետրուարի 15-ին, քաղաքային ժողովարանի դահլիճում, հայոց երկսեռ դպրոցների ուսուցչական խումբը, նոյն դպրոցների օգտին տուեց մի ներկայացումն։ Խաղացին Յ. Պարոնեանի՝ «Բաղդասար Աղբար» 4 գործ. կոմեդիան, իսկ ռուսերէն լեզուով էլ «Чья эта шляпа, сударыня» 1 գործ. հեղ. Մեասնիկովի։

Իսկ ամսիս 25-ին նոյն տեղում տեղի ունեցաւ ռուսերէն ներկայացում քաղաքային 4-դասեան դպրոցի չքաւոր սաների օգտին։ Ամսիս 19-ին նոյն ժողովարանում, տեղական կանանց կոմիտէտը պատերազմից վնասուածների օգտին մի երեկոյթ կազմեց ճոխ բովանդակութեամբ։ Ցոյց տուին կենդանի պատկերներ և յետոյ տեղի ունեցան պարեր։

—Բարսեղ Կարապետեանը իւր մօր յիշատակին 100 ռ. նուիրեց Էջմիածնայ Եղբ. օգնութիւն ընկերութեան, 100 ռ. տեղական հայկական կոմիտէտին, 50 ռ. Կ. Հ. Բ. Ընկ. տեղական ճիւղին, իսկ 50 ռուբլի էլ Հայ կանանց Բարեգործ. Ընկերութեան։

— Յովհ. Ջեամեճեանի պսակադրութեան հանդէսին, պ. Պետրոս Խաչատրեանը Կ. Հ. Բ. Ընկ. տեղական ճիւղի օգտին հանգանակել է 11 ռուբլի։ Այս երկրորդ անգամն է, որ յիշեալ պարոնը այդ ընկ. օգտին այդպիսի ուրախութիւնների ժամանակ նուէրներ է հաւաքում։ Այս օրերս նոյն ընկ. վարչութիւնը սկսել է իւր անդամներից հաւաքել այս տարուայ անդամավճարները, սակայն շատ յայտնի ունեւորներ, որոնք մի քանի տասնեակ հա-

գաւառների, նոյնիսկ հարիւր հազարի կարողութեան տէր են, առանց խղճի խայթ զգալու մերժում են անդամագրուել, ընդհակառակը միջին և արհեստաւոր դասակարգից շատերը ինքնաբերաբար գրւում են անդամ։

— Կ. Հ. Բ. Ընկ. տեղական վարչութիւնը մտադիր է շուտով բաց անել օսլայ-լուացարան արհեստանոց՝ տեղական օրիորդներին և տիկիններին ձրի սովորեցնելու համար։

— Քաղաքումս մսի ճգնաժամը (կրիզիսը) դեռ շարունակւում է. ինչպէս լսում ենք, մօտ օրերս մեզանում տեղի է ունենալու քաղաքային աւագի նոր օգնականի ընտրութիւն, հրաժարուած օգնական՝ Յար. Ղազարոսեանի փոխարէն։ Ինչպէս նախորդ նամակովս հաղորդել էի, այդ պաշտօնի համար խօսւում էր միայն պ. Յովհ. Զաթալբաշեանի թեկնածութեան մասին։ Այժմ հաստատապէս տեղեկացանք, որ առաջ է եկել և քաղաքային իրաւասու պ. Լեւոն Հէպիպեանի թեկնածութիւնը։

* * *

Երեւանի քաղաքագլուխ վերընտրուեց իրաւասուների ձայների ճնշող մեծամասնութեամբ իրաւաբան պ. Սմբատ Խաչատրեանը, որը, չնայած իր կարճատեւ ծառայութեան քաղաքագլխի պաշտօնում, վաստակել է ժողովրդի լայն խաւերի վստահութիւնը։

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

Կ. Հ. Բ. Ընկերութեան գրադարանից տրուած է կարդալու համար հայերէն 3158 գիրք, ռուսերէն՝ 1155, ընդամէնը 4313, որից 614-ը ընթերցարանում կարդալու, իսկ 3699 տուն տանելու համար։

Միեւնոյն միջոցին ընթերցարան յաճախել են 3420 այր և 4355 կին, ընդամէնը 7775 հոգի։

* * *

## ՀԱՅԿԱԿԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԷ

Ամսոյս 3-ին, հինգշաբթի, Կ. Հ. Բ. ընկերութեան գրադարանի դահլիճում կայացաւ Հայկ. Կեն. Կոմիտէի հերթական նիստը, որին ներկայ էր Բագուի փախստականների կոմիտէի նախագահ պ. Հ. Տէր Միքայէլեանը։

Նախկին նիստի արձանագրութեան ընթերցումից յետոյ կոմիտէի նախագահը կարդաց ստացուած հեռագրերից հետեւեալ հեռագրերը. Իգդիրից պ. Մ. Մատինեանից. «Կոմիտէի ուղարկած խումբը արդէն հասել է Խնուս և Մուշ և հաղորդում է, որ այնտեղ հացի կողմից փախստականները առ այժմ ապահովուած են. 700 հոգի Խնուսցիներ անցան Ալաշկերտ. այնտեղ բացւում է նոր որբանոց, Իգդիրից ուղարկեցինք շորեր, անկողիններ, թէյ, շաքար, սապոն, և նաւթ»։

2. Օլթիից պ. Տէր-Մարգարեանից. «Այսօր Օլթի բերին 52 հայ փախստական—կանայք և երեխաներ խալերցի, որոնց ռուս զինուորները խլել են տաճիկների ձեռքից աջակցութեամբ Օլթիի շրջանի կառավարչի։ Քաղաքների միութիւնը ընդունեց փախստականներին իր հովանաւորութեան տակ։ Խընդրում եմ հրահանգէք, թէ ո՞ւր ուղարկել սրանց»։

3. Բաթումից Տէր-Մեսրոպ քահ. Մելեանից. «Այն հայերը, որոնք բերել էին ընծաներ զինուորների համար, հեռախօսով Ռիզայից տեղեկացնում են, որ գտնուել են զանազան վայրերում 60 հայ որբ. ենթադրում են, որ գտնուին և մօտ 200 որբ. այս քանի օրերս նրանց կը բերեն. սպասում ենք ձեր կարգադրութեան»։

4. Նոյն տեղից հայր Մելեանը հաղորդում է. «Ականատեսները պատմում են, որ Ռիզայի մօտերքը մեր զօրքի առաջխաղացման ժամանակ նկատուել են նոր սպանուած հայերի դիակներ. որբերի ժողովելը շարունակւում է. որոշել ենք Բաթում բաց անել որբերի ապաստարան. կազմել են մի խումբ, որը պատրաստ է ուղեւորուել կենդանի մնացած հայերին օգնութիւն հասցնելու և ցիրուցան եղածներին ժողովելու. սպասում ենք թոյլտուութեան և դրամի»։

5. Նոր-Բայազէտ. Կ. Հ. Բ. Ընկ. Տեղական ճիւղի Վարչութիւնից. «Փոխադրեցէք 2000 ռ. փախստական երեխաների ապաստարանների համար»։

6. Իգդիր Բժ. Ա. Աթաբէգեանից. «Դիադինի շրջանի փախստականները ամբողջովին ձգտում են վերադառնալ, երկիւղ կրելով, որ նրանց հողերը ուրիշները կը տիրապետեն։ Այսպիսի մեծ վերադարձը ժողովրդի, որը ուժասպառ և քայքայուած է, կարող է մեծ աղէտ առաջ բերել, մանաւանդ տեղում էլ չկայ սնունդ և բաւարար բժշկական օգնութիւն»։

7. Պետրոգրադ, Պետական Դումայի անդամ պ. Մ. Պապաջանեանից. «Որպէս զի ստացուեն նիւթական միջոցներ դաշտային աշխատաւորների համար՝ հարկաւոր են տեղեկութիւններ վարելահողերի և գործիքների քանակութեան, համար այլ և թէ որտեղ կարելի է գտնել սերմացու։ Շուտով հաղորդեցէք այդ տեղեկութիւնները։»

Այս հեռագիրների առթիւ Կենտրոնական Կոմիտէն կայացրեց հետեւեալ որոշումները. Որբերին բերել Կովկաս և նրանց տեղաւորել այս տեղի որբանոցներում կամ նորերը բացանել։ Օլթի բերած և գերութիւնից ազատուած հայ կանանց և երեխաներին փոխադրել Կարսի մօտ շրջանը և այդ մասին հեռագրով առաջարկել Կ. Հ. Բ. Ընկ. Կարսի ճիւղի վարչութեան, որ անմիջապէս ուղարկի մարդիկ նրանց բերելու համար։

Բաթումի Բարեգործական ընկ. ճիւղի վարչութեան հաղորդել՝ ամենայն միջոցներ գործ դնել նոր նուաճած ծովեզրեայ շրջաններում փնտռելու և բերելու Բաթում կենդանի մնացած հայերին և այնտեղ որբերի համար բանալ ապաստարան։ Սկզբնական ծախսերի համար փոխադրել 8000 ռ.։

Նոր-Բայազէտ փոխադրել փախստական երեխաների ապաստարանի համար 2000 ռ.։ Իգդիր բժ. Ա. Աթաբէկեանին հաղորդել, որ առայժմ ցանկալի է փախստականներից այր և աշխատանքի ընդունակ մարդկանց վերադարձը և որ Կենտրոնական Կոմիտէն միւս ազգային կազմակերպութիւնների հետ միասին զբաղուած են վերադարձող փախստականների խնդրով. պատրաստւում էր նրանց սնունդ, սերմացու, լծկաններ և գիւղատնտեսական գործիքներ հասցնելու համար։

Պետական Դումայի անդամ պ. Պապաջանեանի հարցի պատասխանը յետաձգուեց մինչև մարտի 6-ը, երբ լինելու է խառը ժողով Հայոց Գիւղատնտեսական ընկերութեան վարչութեան հետ։

Ապա Կոմիտէին զեկուցին բազմաթիւ գրութիւններ, որ ստացուած են զանազան տեղերից փախստականների մասին։ Թիֆլիսի քաղաքային փախստականներին նպաստող Կոմիտէն հաղորդում է, որ քաղաքում ապրող և մինչև յունուարի տասը ցուցագրուած բոլոր հայ փախստականները ստանալու են երենց նպաստը կառավարութիւնից նշանակած Հայկական Կենդրոնական Կոմիտէի միջոցով, որին և կը յանձնուի յունուար և փետրուար ամիսների գումարը։

Կ. Հ. Բ. ընկ. Կարսի ճիւղի վարչութիւնը հաղորդում է, որ քաղաքում գտնուող հազարաւոր փախստականների դրութիւնը վերին աստիճանի ծանր է։ Կառավարութիւնից նպաստ չեն ստանում, որովհետեւ Կարս քաղաքում փախստականներին իրաւունք չէ տուած՝ ապրելու, Փախստականները ստիպուած դիմում են փողոցային մուրացկանութեան։ Իսկ եթէ նրանք փոխադրուէին գիւղերը, կարող են ստանալ կառավարութեան որոշած բաժինը 20 կ. մեծերը, իսկ 10 կ. մինչև հինգ տարեկան հասակի երեխաները։ Փոխադրութեան համար հարկաւոր է 12,000 ռ.։

Կոմիտէն որոշեց անմիջապէս փոխադրել Կարսի ճիւղի վարչութեան 3000 ռ. փախստականների սննդի համար, իսկ փոխադրութեան ծախսերի համար դիմել գլխաւոր լիազօր գեներալ Թամամշեւին։

Կոմիտէի կից կազմած փախստականների արհեստանոցների մասնաժողովի կողմից պ. Յ. Տէր Միրաքեանը զեկուց, որ Օլղինսկի փողոցում, պ. Մելիք Ազարեանցի տանը բացուեց ոսկերիչների ընկերական արհեստանոց, ուր առ այժմ աշխատում են 22 վարպետ։

Կոմիտէի գանձապահ պ. Գ. Ծուրինեան զեկուց, որ ծախւում է Բաթումի թէյ 500 ֆ. և ֆունտը արժէ 1 ռ. 20 կ., որը շատերը փորձել են և գտել են բաւարար։ Կոմիտէն որոշեց գնել ամբողջը ապաստարանների և փախստականների համար։

Կոմիտէի նախագահ պ. Սամսոն Յարութիւնեանը զեկուց, որ մարտի 1-ին Նորից ուղարկուեց չորս վագոն (138 հակ) վերմակներ, տաք շորեր և սպիտակեղէն դէպի Խնուս, Մուշ փախստականների համար։

Արդահանի փախստական երեխաների համար, որոնց թիւը հասնում է 300 հոգու, որոշուեց բանալ դպրոց, ուղարկել չորս փախստական ուսուցիչ, դասագրքեր և այլ դասական պիտոյքներ, և 300 ռ. նստարաններ և սեղաններ շինելու համար։

⁂

ՆՈՒԷՐՆԵՐ ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻ ՕԳՏԻՆ

1) Լոնդոնի Լորդ-մէրի (քաղաքագլխի) կոմիտէի նախագահ պ. Աննէրի Վելլեամսը Հ. Կ. Կոմիտէի նախագահ Ս. Յարութիւնեանի անունով փոխադրել է Նորից 74,750 ռ., 2) Կովկասեան ճակատի փախստականների գլխաւոր կարգադրիչ գեներալ Վ. Թամամշևից 3000 ռ. 3) «Հորիզոնի» խմբագրութիւնից 5000 ռ., 4) Իրկուտսկի նահանգի Բոդբայսկ վայրի հայ տիկնանց խմբից Նորից 65 ռ. (առաջ էլ ստացուել էր 420 ռ.)։

⁂

«Մի բաժակ թէյ»-ի (Գոլովինեան պողոտայ, Տէր-Մարգարեանի տանը) եռանդուն կառավարչուհի տիկին Շուշանիկ Օգանէզեանի տուած հաշուից երևում է, որ փետրուարի 1-ից մինչև մարտի 1-ն 1916 թ. ստացուած է. թէյի, սուրճի և այլն վաճառումից 3894 ռուբլի 88 կոպ. և թէյատանը ձախուած դրամատուփերից 70 ռ. 18 կ., ընդամէնը 3965 ռ. 6 կ., վճարուած է շաքար. թէյ և այլ մթերքների 1813 ռ. 40 կ., ամանեղէնի և այլ պիտոյքների 374 ռ. 89 կ., ծառայողների ռոճիկ 85 ռ., երաժշտական խմբին 198 ռ., թէյատան բնակարանի վարձ 300 ռ. և մանրածախսերի 25 ռ. 79 կ., ընդամէնը 2797 ռ. 8 կոպ., ուրեմն զուտ արդիւնք մնում է 1167 ռ. 98 կ.։

## Քրոնիկոն

Մարտի 2-ին Թիֆլիսում, Մանթաշեանի շինութեան մէջ, Գանովսկի փողոցում, Կովկասի Հ. Բ. Ընկ. ձեռնարկութեամբ բացուեց վաճառք փախստականների արհեստանոցներում պատրաստուած իրերի։ Գործի ղեկավարութիւնը յանձնուած է Խորհրդի անդամներ իշխ. Մ. Թումանեանին և տ. Հ. Սաստամեանին։

Պահեստը բաց է լինելու ամեն օր առաւօտեան ժամի 9-ից մինչև երեկոյեան ժամի 6-ը, իսկ կիրակի օրերը՝ առաւօտեան 10—12 ժամը։ Ամեն մի այցելող հնարաւորութիւն ունի ծանօթանալու փախստականների մէջ տարածուած արուեստներին, նրանց հմտութեանը արուեստների մէջ, իսկ իրերի գնելը նրանցից թէ բարոյական խրախուսանք է և թէ նիւթական օգնութեան լաւագոյն ձևը։

⁂

Թիֆլիսի Կանանց Բարձրագոյն դասընթացներին կից բացւում է բժշկական բաժանմունք։ Քաղաքային վարչութիւնը այդ բաժանմունքի տրամադրութեան տակ է դնում իր մի քանի հիւանդանոցները փորձնական դասերի համար։

⁂

Մի քանի ամսից յետոյ սկսուելու է Պոլիտեխնիկումի (բազմարուեստեան դպրոցի) շինութեան կառուցումը։ Շինարարական մասնաժողովի վերջին նիստում յանձնուեց ինժեներ Ունջոյկուն յատակագծի վերջնական մի քանի փոփոխութիւններ կատարել։

⁂

Շերամապահական կայարանին կից առաջիկայ ապրիլից բացւում են շերամապահութեան, մեղուաբուծութեան դասընթացներ, որոնք տևելու են մինչև յունիսի 1-ը։

Տեսական դասերի հետ զուգընթաց լինելու են և գործնական վարժութիւններ և փորձեր։

Ցանկալի է, որ ազատ բանգէտ փախստականները յաճախէին փորձնական դասերին, որպէս զի վերադառնային հայրենիք այդ օգտաւէտ գիտելիքների պաշարով։

⁂

Քաղաքային Վարչութիւնը ներկայացրել է Թիֆլիսի Նահանգապետին ի հաստատութիւն Նոր իրաւասուների ընտրութեան ժամանակը և տեղը։ 1, 2 և 3 ընտրողական քաղաքամասերի իրաւասուների ընտրութիւնը լինելու է մարտի 20-ին, իսկ 4, 5, 9 և 7 քաղաքամասերինը՝ նոյն ամսի 27-ին։ Ընտրութեան տեղերն են. 1 մասինը՝ Աշխատանքի բորսան, 2-ը՝ Դումայի դահլիճը, 3-ը՝ Արհեստաւորական դպրոցը, 4-ը՝ (Առևտրական) Կոմմերչեսկի դպրոցը, 5-ը՝ Հաւլաբարի ակումբը (կլուբը), 6-ը՝ Ժողովրդական տունը և 7-ը՝ Երկաթուղու կայարանի մասի դպրոցի շինութիւնը։

⁂

Թիֆլիսի Նահանգապետը յայտարարում է, որ կառավարիչ սենատի Բարձրագոյն ուկազի համաձայն զօրաժողովի հերթով, զինուորական ծառայութեան են կանչւում 1897 թ. ծնուածները, որոնք պէտք է ներկայանան իրենց գտնուած վայրի զինուորական կառավարիչներին ճիշդ որոշուած օրը, որի մասին կը յայտարարուի առանձին։ Կանչուածները պէտք է ունենան անցագրեր, ինչպէս և հարկաւոր իրեր, վերնազգեստներ և կօշիկներ, որոնք զինուորական ծառայութեան մտնելու համար անհրաժեշտ են։ Նրանք, որոնք պէտքական կը ճանաչուին ծառայութեան համար, տուն գնալու համար արձակուրդներ չեն ստանայ։

## Արտաքին տեսութիւն

### ՊՈՐՏՈՒԳԱԼԻԱՆ

Երկար տատանումներից յետոյ Պորտուգալիան էլ որոշեց մասնակցել համաշխարհային պատերազմին։ Այսպիսով հէնց այն վայրկեանին, երբ Գերմանիան մտածում է Վերդէնը գրաւելով և Ֆրանսիան ընկճելով իր հակառակորդներին հաշտութեան բերել՝ նրա թշնամիների թիւը մէկով աւելանում է։

Ինչպէս Պորտուգալիան վաղուց պէտք է պատերազմի դաշտ իջնէր։ Համաձայն վաղուց կնքուած մի դաշնագրութեան՝ Անգլիան երաշխաւորում է Պորտուգալիայի ամբողջութիւնը, որի փոխարէն վերջինս պարտաւորւում է Անգլիային օգնել պատերազմի դաշտում ամեն անգամ, երբ սրանից օգնութեան առաջարկ կըլինի։ Այդ դաշնագրութեան հիման վրայ դեռ պատերազմի սկզբին, շատերն էին սպասում, թէ Պորտուգալիան այսօր-վաղը դուրս կըգայ Գերմանիայի դէմ։ Սակայն այս ակնկալութիւնը չարդարացաւ, որովհետև 1914 թ. աշնանը Պորտուգալիայում տեղի ունեցաւ մի յեղափոխութիւն—մէկն այն թայֆայական յեղափոխութիւններից,

նահանջի ժամանակ սրանց էլ քաղաքից դուրս են տարել և մինչև վերջին երեխան կոտորել... Այսպէս է թիւրքական բարբարոսութիւնը,—անվերապահ մինչև իր տրամաբանութեան վերջին եզրակացութիւնը. զազիր մինչև այն աստիճանը, որից զազրելի մարդ արարածը լինել չի կարող...

Կարնոյ առաջնորդ Սմբատ եպիսկոպոսը, որ այս ամբողջ անցուդարձի ժամանակ մեծ անձնուիրութիւն է ցոյց տուել ժողովրդի հանդէպ՝ երբ տեսնում է, որ Կարինը դատարկւում է հայ ժողովրդից և իրեն այլ ևս ոչինչ չէ մնում անելու՝ դիմում է թիւրք իշխանութեանը և խնդրում՝ որ իրեն թոյլ տան գնալու ժողովրդի ետևից։ Սակայն կառավարութիւնը նրան պատասխանում է, որ նա գնայ այնտեղ, ուր իրեն կհրամայեն։ Օգոստոսի վերջերին նրան հայ-բողոքական քարոզիչների հետ աքսորում են։ Սմբատ եպիսկոպոսի վիճակն անյայտ է, սակայն ի նկատի ունենալով, որ նրա հետ աքսորուած քարոզիչներին ճանապարհին սրախողխող են արել՝ պէտք է ենթադրել, որ Սմբատ եպիսկոպոսն էլ իր վախճանն է գտել։

Ընդհանրապէս պէտք է նկատել, որ այս հալածանքների ժամանակ թիւրքերը խտրութիւն չեն դրել հայ բողոքականի, կաթոլիկի և լուսաւորչականի մէջ։ Աւելին ևս. նրանք նոյնիսկ չեն խնայել խալամացած հայերին։ Հալածանքների սկզբում հայերից շատերը մահմեդականութիւն էին ընդունել, կարծելով թէ կը փրկուեն։ Սկզբում թիւրքերը լաւ էին վերաբերւում սրանց։ Սակայն վերջում հրաման եկաւ հայերին այլևս մահմեդական չդարձնել, դարձածների հետ էլ վարուել այնպէս, ինչպէս մնացածների հետ։ Այսպիսով տաճկական գազանութիւնը, ներկայ դէպքում այս տեսակէտից ևս, գերազանցել է բոլոր նախորդներին...

Այս մասսայական ջարդի ժամանակ տեղի ունեցած խժդժութեանց դէպքերն այնքան փշաքաղող, այնքան քստմնելի են, որ մեր գրիչն ուղղակի անզօր է նկարագրել... Մենք լսում ենք... Լսում ենք և այն, թէ այս զարհուրելի կոտորածներից փրկուած ժողովրդի մնացորդները ինչ վիճակի մէջ են գտնւում...

Ա. Ջամալեան

## ԱԴԱԲԱԶԱՐԻ ԱՂԷՏԸ

Մշակի Կիեւի թղթակից Մ. Գ. հետևեալն է հաղորդում Ադաբազարի հայերի աքսորման մասին մի անցքերին ականատեսի խօսքերով։

Ամառուան եղանակն էր, այցելութեան գացած էի իմ բարեկամին։ Տեսայ այնտեղ ինձ հայրենակից տիկին մը, որը իր գտնուած Զ... քաղաքը ստիպուած թողուցեր և տաժանելիր ճամբորդութենէ վերջ, քանի մը օր առաջ Կ. Պոլիս հասած էր, իր հետ բերելով միայն իր երկու որդիները. իսկ ամուսինը մնացած էր վերջին պատահարներու ժամանակ։

Մեր խօսակցութիւնը բնականօրէն մեր ազգին, մեր հայրենակիցներուն շուրջ կը դառնար։ Ահա համառօտակի իմ խօսակցին պատմութիւնը, իր ճամբին վրայ հանդիպած Ադաբազար քաղաքի հայութեան տեղահանութեան մասին.

«Ամառուան կիզիչ օր մըն էր, առաւօտը հասանք Ադաբազար։ Բնաւ տեղեկութիւն չունէի, թէ նախընթաց օրը ինչ էր պատահեր հայերու գլխուն։ Ամուսնոյս պաշտօնակից յոյնի մը տուն իջեանեցայ, և այնտեղ լսեցի աղէկտուր պատմութիւնը, որ չեմ կարծեր թէ կարող ըլլամ կարգաւ պատմել, որովհետև բնականոն վիճակի մէջ չէի, երբ պատմեցին ինձ եղածները։ Նոյն օրն իսկ տեսայ նախընթացի շարունակութիւնը։ Առաջին օրը հայերը հրաման առացան, որ ամբողջ այրերը պէտք է կառավարութեան հրամանով մեկնին անորոշ տեղ մը։ Բնականաբար բանի դուրս հանուեցան և աքսորուեցան չեմ գիտեր ուր...։ Այդ օրուան յաջորդ երկու օրերը, անոնց ընտանիքները ամբողջովին հանուեցան իրենց տուներէն և տարուեցան շոգեկառքի կայարանը, ուրկէ պէտք էին ղրկուել՝ ուր որ կառավարութիւնը որոշէր։

«Աքսորանքի երրորդ օրն էր։ Այդ օր պիտի ծախէին հայերու կարասիները։ Հաւաքուած էր խուռն բազմութիւն թիւրքերէ և հրէաներէ։ Յոյներուն արտօնուած չէր ոևէ բան գնել։ Երկու օրուան վաճառումները միայն տեսայ։ Յայտնի բան է, դեռ շատ օր կը տևէր 2000-ի մօտ հայերու կայքերու վաճառումը։ Թիւրք պաշտօնատար մը նախապէս տան բակը իջեցնել կուտար իր հաւանած կարասին և իր տուն կուղարկէր, իսկ մնացածը կը ծախուէր։ Կը հաւաքէին ահագին կոյտ մը ապրանք և կուտային թիւրքի մը՝ ասելով. «Տուր 10 ղրուշ (80 կ.) և տար»։ Այդ 10 ղրուշով վաճառուած իրեղէնները 150—200 ռուբլով գնուած իրեր էին։ Հրէաներն ալ անմաս չէին այդ կողոպուտէն. այնպէս որ, կը գնէին հարիւրերորդ արժէքով։ Երբ արդէն աճուրդը վերջացած և ամեն մարդ իր արդար կերպով գնած իրեղէնները կը պատրաստուէր փոխադրել, վրայ կը հասնէին կառավարական պաշտօնեաներէն ոմանք, որ ուշ մնացած էին, և տեսնելով (առ հասարակ հրէաներու գնած ապրանքները միայն) իրանց ախորժակը գրգռող ապրանք մը, անմիջապէս կը հարցնէին թէ այդ ապրանքը քանիով գնուած էր, և կը վճարէին ու իրենք կը տանէին։

Երբ այս ամենը տեղի կունենար, այդ տուներու տէրերը (կիները) անդին, 10—15 վայրկեան հեռաւորութեամբ, խռնուած էին շոգեկառքի կայարանը՝ իրաւունք չունենալով այլևս վերադառնալ իրանց տունը։

«Երրորդ օրն էր. մեկնելու էի դէպի Պոլիս. հիւրընկալս շատ դժուարութեամբ յաջողեցաւ մեկնելուս արտօնութիւն առնել. միշտ կեղծելով որ ես թիւրք կին մըն էի, և այդպէս ալ թիւրք կնոջ երեսակալ քօղ գնելով հասայ կայարան։ Ո՜հ, ինչ տեսնեմ. կիներու, աղջիկներու, տղայոց իրարանցում. խեղճ զգեստներով, գլուխնին բաց, ոտներնին բոբիկ, մին այս կողմը վազելով իր տղան կը փնտռէ, միւսը իր կորուսած աղջիկը կը փնտռէ։ Բոլորը կանայք էին»։

## ՀԱՅԵՐՈՒ ՀԱԼԱԾԱՆՔՆԵՐԸ*)

### ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԾՐԱԳԻՐ-ԹՐՔԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔ

II

Revue des deux mondes-ի անստորագիր յօդուածագիրը՝ իւր գրուածքի երկրորդ և երրորդ մասը նուիրել է պատերազմի սկզբին, հայերու ունեցած տրամադրութեան և պատերազմի ընթացքին քաշած հալածանքներուն։

Յօդուածագիրը գտնում է անչափ բնական, որ պատերազմը ծագելուն թէ օսմանեան կայսրութեան մէջ և թէ նրա սահմաններէն դուրս գտնուած հայերը յայտնեցին Ֆրանսիային և իրա դաշնակիցներուն իրենց համակրանքը և մեծ թւով մտան ֆրանսական բանակը կամաւորներ։ Այդ երևոյթը եզակի չէր հայերի համար, ի նպաստ Ֆրանսիայի եղան ուրախութեան ցոյցեր, թէ Պոլսում և թէ այլուր թուրքերու կողմից մինչև իսկ։ Թուրքիան այդ ժամանակ դեռ ևս հակառակորդ չէր. դալ կռուել ֆրանսական շարքերում, այն Ֆրանսիայի, որը բարեկամ է եղեր միշտ ազատութեան, և դարերու ընթացքին բարեկամ թուրք կայսրութեան, որով հայերու ֆրանսական բանակում կամաւոր գրուելը, բոլորովին բնական էր, և կարող էր միայն Գերմանիոյ անհաճոյ թուել, մանաւանդ որ, օսմանեան կայսրութեան մէջ ապրող ուրիշ ցեղեր էլ՝ արաբներ, սերբիացիներ, հրէաներ և այլն, մտան հայերու հետ միասին ֆրանսական բանակը՝ կռուելու իրաւունքի և ազգութիւններու ազատութեան համար։

Երբ Թիւրքիան պատերազմի խառնուեց, Կովկասում գտնուած այն տաճկահայերը, որոնք 1895—1896 թուերու սոսկալի կոտորածներէն ազատուեր էին, ահագին թուերով դիմեցին ռուս

*) Տես «Համբաւաբեր» № 10։

կամ հայերին առանց նուաճելու նրանց երկիրները. իսկ եթէ այդ երկիրները բարեկարգ և ազատ կառավարութիւն վայելէին, այդ ի հարկէ նպաստաւոր էր թէ գնողին և թէ վաճառողին։

Նրանց համար առևտուրը մի դաւանանք (դոգմա) էր, իսկ պարլամենտական կարգերը մի համայնադեղ (պանացէում) բոլոր չարիքներին։

Այդ հայեացքներով տոգորուած Անգլիան համակրութեամբ հսկում էր եւրոպական ցամաքի քաղաքական և սոցիալական շարժումներին և նրա արած քայլերը դէպի ազգային սահմանադրական ազատութիւնները. եթէ աշխարհը ապրէր խաղաղ և օրէց օր աւելանար ազգերի հարստութիւնը, այդ նշանակում էր լաւ առևտուր և ազատ փոխանակութիւն Անգլիայի համար։ Գուցէ այդ մի հերոսական դաւանանք չէր, բայց դէթ առիթ էր տալիս տառապող ազգերին զարգացնելու իրենց ազգային միութեան կամ քաղաքական ազատութեան ճիգերը։

Իսկ եթէ մինչև 1882 թուականը ազատական Անգլիան զանազան առիթներով նետուել է եւրոպական յորձանքի մէջ, նա արել է պարզապէս քաղաքական ոյժերի հաւասարակշռութիւնը պահպանելու համար։ Անգլիան ԺԶ և ԺԷ դարերի ընթացքում արիւնոտ պայքարով իր ազգային միութիւնը և սահմանադրական ազատութիւնները ապահովելուց յետոյ, սահմանափակուած իր փոքրիկ կղզիների մէջ՝ ինքն իրեն տուել էր եւրոպական հաւասարակշռութեան իրաւարարի դերը։ Ուտրէխտի հաշտութեամբ 1713-ին Ֆրանսիայ Լուի ԺԴ-ի փառասիրութիւնները սանձելուց յետոյ, անդադար հսկել է Եւրոպայում և այլ աշխարհներում քաղաքական ոյժերի հաւասարակշռութեան պահպանման։

Ի նկատի առնելով այդ երկու հիմնական բայց ըստ երևոյթին հակադիր ձգտումները—այն է՝ առևտրական ազատ փոխանակութեան և քաղաքական հաւասարակշռութեան պահպանումը—կարելի է այժմ դիմել ԺԹ դարու պատմութեան մի քանի դէպքերին՝ վերև յիշուած ձգտումները լուսաբանելու համար։ Պէտք էր Յունաստանը ազատել Թիւրքիոյ ճանկերից և ստեղծել մի շուկայ, բայց առանց Անգլիոյ միջամտութեան և միմիայն Ռուսաստանի գործունէութեամբ Բալկաններում կարող էր խախտուել ոյժերի հաւասարակշռութիւնը։ Եւ գոյացաւ մի համաձայնութիւն Յունաստանի վերաբերմամբ։ 1827-ի յունուարին Պետրոգրադում կնքուած ռուս-անգլիական արձանագրութիւնը (պրոտոկոլը) հիմք էր դնում Նոր Յունաստանի անկախութեան, որ նուիրագործուեց Նաւարինի յաղթութեամբ։

Այդ երկու սկզբունքների անյեղլի, բայց ոչ-ակներև համադրութեամբ, աստիճանաբար ազգային ինքնուրոյնութիւն ստացել են Ռումինիան և Սերբիան Ղրիմի պատերազմի հետևանքով, և Բուլգարիան 1878 մարտի անգլո-ռուսական գաղտնի համաձայնութեամբ, որ ի հարկէ յայտնուեց բաւական ուշ։

Մօտաւորապէս մի քառորդ դարու հեռաւորութեամբ իրարից բաժանուող այս քաղաքական յաղթանակները, առնուած առանձնապէս, թւում է թէ իրենց ժամանակակից քաղաքական պայմանների դիպուածական արդիւնքներն են։ Իսկ ընդհակառակն այդ դէպքերը նկատելով իբրև մի ամբողջութիւն, դիւրին է նշմարել մի անշեղ հետևողականութեան և քաղաքա-տնտեսագիտական մի կենտրոնակ պրոցեսի արտայայտութիւնները։

Ուրիշ առթիւ ես կը փորձեմ պարզել արտաքին գործերի նախարար լորդ Գրենվիլի (1880—1884) հայեացքները անգլիական այդ առևտրա-քաղաքական դրդապատճառների համագործակցութեան մասին, որոնք աւելի կամ պակաս չափով կազմել են հիմքը Արևելեան հարցին՝ դէթ մինչև 80-ական թուականները։

(Կը շարունակուի) Արշակ Սաֆրաստեան

# Գեղարուեստ

## ԾԱԹԷ...*)

Ե՛լ, ծաթէ, ծաթէ,
Լուսին արծաթէ,
Ծիցին մէջ ծաթ-ծաթ
Ծովակին արծաթ.
Վանայ ծովակի,
Ծաղկուն ձորակի,
Ծաւի ծոր ակի
Ծոցին մէջն արծաթ՝
Ծածան, ծաթ ի ծաթ
Ե՛լ, ծաթէ, ծաթէ,
Ծամովդ արծաթէ...

Ե՛լ, ծաթէ, ծաթէ,
Իմ երգ արծաթէ...
Տես, կը սրսփան
Սասունն ու Սիփան՝
Սարսուռ—սև սուգով,
Սառն արտասուքով...
Սառն են, սառն
Մեր մնգուս սարեր.
Եղենին, եղնիկ
Մահացան միզմիկ...
Ել, ծաթէ, ծաթէ,
Իմ երգ արծաթէ...

Այժըմ շողն ու շաղ,
Դաշտեր շարէ շար
Շարմաղ ու նախշուն՝
Կը շնչեն Աշուն...
Ել, ծաթէ, ծաթէ,
Նոր կեանք արծաթէ...
Թող ծաղկի նոր ծառ,—
Ծիրանը ծալ-ծալ...
Թող ծլի ծիծաղ.
Թող ծնէ իմ ծեր
Ծնողք նոր ծիծեռ,
Եւ ծնուող ծիծեռ
Ծծէ Լոյս-ծիծեր...

Ե՛լ, ծաթէ ծածա՜ն,
Ծաւի ծիածա՜ն,
Ծփուն ծովակի,
Ծաղկուն ձորակի,
Ծաւի ծոր ակի
Ծոցին մէջն արծաթ՝
Անո՜ւշ, ծաթ ի ծաթ
Ե՛լ, ծաթէ, ծածա՜ն,
Ծաւի Ծիածա՜ն...

ԿԱՐԱԳ

Թիֆլիս

*) Արևմտեան բարբառում «ծաթել» նշանակում է շողալ, կաթել, ցոլալ։ Հաւանօրէն ցայտել բառն է կամ միևնոյն արմատից ծագած։ Խմբագր.

# ՊՈԿՈՒԱԾ ԾԱՂԻԿ

*(Պատմուածք փախստականների կեանքից).*

Не говорите мнѣ: онъ умеръ, онъ живетъ.
Пусть жертвенникъ разбитъ, огонь еще пылаетъ,
Пусть роза сорвана, она еще цвѣтетъ,
Пусть арфа сломана, аккордъ еще рыдаетъ.

Надсонъ

## I

Փախստականների սև թափօրն էր գալիս։

Կովկասի X... քաղաքի մի շքեղ տան սեղանատանը նստած էր կեանքի վայելքներով յղփացած Կիրակոս աղան և անուշ-անուշ թէյ էր վայելում, երբ ծառան ներս բերեց այդ օրուայ լրագիրները։

Կիրակոս աղան թէյը մի կողմը դրեց և ծոյլ հետաքրքրութեամբ սկսեց լրագիրը աչքի անցնել ու քիչ յետոյ դարձաւ դիմացը նստած կնոջը.

— Լսո՞ւմ ես, տիկին, ինչեր են գրում։

— Ի՞նչ կայ, անհոգ հարցրեց կինը։

— Սև թափօրն է գալիս... այն կողմերին կրկին սկսել են կոտորել և նրանք փախչում են դէպի մեր երկիրը։

— Աղքատների թիւը կաւելացնեն, ուրիշ ոչինչ, նկատեց կինը և էլեքտրական զանգը քաշելով, ներս մտնող աղախնուն պատուիրեց իր արդուզարդը պատրաստել։

Կիրակոս աղան նորից լրագիրը ձեռքն առաւ ու նրա դէմքը աւելի ու աւելի մթագնեց։ Նա զգաց, որ եկող հեղեղը սովորականից չէ, որ նա այսպէս թէ այնպէս իր դուռն էլ է բաղխելու և իր կենցաղի խաղաղութիւնը խանգարելուց զատ գրպանի վրայ ծանրանալու։

— Է՜հ, չազատուեցանք դրանցից, ասաց նա, հիմա դադար չենք ունենալու մեր ազգասէր-բարեգործներից և օր ու գիշեր զահլա կտանեն։ Ասաց, մի վայրկեան միայն տևեց նրա դէմքի մռայլը և նրա ճարպոտ դէմքին կրկին փայլեց խինդն և ուրախութիւնը և թէյն վերջացնելուց յետոյ սկսեց անուշ-անուշ զրոյց անել կնոջ հետ, թէ ուր պիտի անց կացնեն այդ երեկոյ՝ կլուբում թէ՞ թատրոնում...

## II

Այդ հեղեղն եկաւ և ողողեց Կովկասի բոլոր քաղաքներն և գիւղերը։

Քաղցածների թափօրը բաղխեց ամեն տուն ու դուռ և դողդոջիւն, երկչոտ ձեռքերով հաց խնդրեց իր փորը կշտացնելու, շոր խնդրեց իր մերկ մարմինը ծածկելու, անուշ խօսք՝ իր աղեկէզ սիրտը զովացնելու... Նա եկաւ ու ասաց.

— Հայրենիքի մեռելները ողջունում են ձեզ, նահատակները բարեւում, տանջուածները ձայն տալիս, գերիները թախանձում, աւերուած հարսներն ու կոյսերը վրէժ խնդրում, իսկ մենք ձեր դուռը բաղխում, անուշ խօսք խնդրում։

Նրանք ասում էին ու ամօթխածութեան կարմիր ներկը պատում էր նրանց մթագնած դէմքերը։ Նրանք սովոր չէին դրան։

Պահ մի առաջ նրանց տունը լի էր ամեն բարիքով և հիւրն ու հարամին լիանում էին նրանց հիւրասիրութիւնից, մինչդեռ այժմ, ճակատագրի մի դառն հարուածով, մնացել էին անօթի ու մերկ և սրտի դառնութեամբ ծեծում ուրիշի դուռը...

Բայց սառն էին Կիրակոս աղայի ու նրա կնոջ սրտերը ինչպէս հիւսիսի սառոյցը և ոչ մի բան չէր ազդում նրանց քարացած սրտերի վրայ։

Նրանք տեսնում էին փողոցները լցուած կիսաքաղց, հիւծուած փախստականներին ու երեսը շուռ տալիս։

Նրանց հոգու թելերը չէին շարժւում երբ տեսնում էին բոկոտն մանուկներին հաց խնդրելիս, անմեղ կոյսերին կիսամերկ շրջելիս ու թշուառ մօրը ուշաթափ փողոցում ընկնելիս...

Օտար էր թշուառութեան այդ աշխարհը նրանց համար, մինչև որ մի դէպք եկաւ յեղաշրջելու նրանց ներքին աշխարհը։

Մի երեկոյ, երբ Կիրակոս աղան կուշտ ընթրիք ուտելուց յետոյ թանկագին սիգարէտը բերանին ծխում էր ժողովարանի շքեղ սրահում և լսում սազանդարի խմբի թուրք երգեցողութեան դայլայլիկը, մօտեցաւ նրան իրեն ծանօթ մի յայտնի անձն և թեւից քաշեց։

Կիրակոս աղան ետ նայեց ու մթագնեց։ Նրա առաջ կանգնած էր բարեգործներից մէկը։

— Լսիր, Կիրակոս աղա, ես մի խնդիր ունեմ, յոյս ունեմ չես մերժի։

— Ասա, խաթերդ համար ամեն բան կանեմ։

— Ես գիտեմ, որ դու քեզ միշտ հեռու ես պահում հասարակական գործերից, բայց ի նկատի ունեցած ներկայ բոպէի լրջութիւնը՝ յոյս ունեմ չես զլանալ մի բանով էլ դու օգտակար լինել փախստականների գործում...

— Է՜... էլի այդ հին առակը։

— Լսիր. շատ չեմ խնդրում, պահպանիր և պատսպարիր մի որբ աղջիկ։ Դու պահում ես շատ աղախիններ, համարիր նրանից մէկը և դրան, որը քո տանն էլ շատ օգտակար կլինի։

— Մի հաւատա, պարոն X. դրանց կաշին շատ հաստ է և զուր ձրիակերութիւն մի սովորցնի, պատասխանեց Կիրակոս աղան։

— Նա կաշխատէ տանդ մէջ։

— Եւ դու հաւատո՞ւմ ես...։ Չէ՞ որ նրանք բոլորը փախչում են աշխատանքից։ Բայց ինչ արած, խաթերդ համար կվերցնեմ այդ աղջկան. վաղը խնդրեմ ուղարկէք տուն։ Այդ խօսակցութիւնից յետոյ Կիրակոս աղայի օջախը մտաւ փախստական մի որբ Նաթեր անունով, որը Վ... քաղաքի լաւ ընտանիքի մի անդամն էր, իսկ այժմ բոլորից զրկուած՝ մնացել էր որբ և անտիրական։

## III

Սիրուն էր Նաթերը...

Նա նմանում էր այն անուշաբոյր վարդին, որ իր քնքոյշ տերեւները բանալով արեւի կենսատու ճառագայթներին է կարօտում, սակայն խորշակեր քամին դունատում, թորշոմեցնում է նրա հէնց նոր բացուող թերթիկները ու կորում բոյրը... Տասն և հինգ գարուն էր բոլորել նա, բայց նրա վառվռուն աչքերից հանգել էր կրակը և տեղի տուել այնպիսի թախիծի, որը անհուն վիշտ էր արտայայտում։

Թորշոմել էին նրա սիրուն այտերը ու նրա երկար մետաքսէ գիսակները խճճուել, խառնուել ու թողի և կեղտի թանձր կեղեւով պատուել։

Երբ նա ներս մտաւ Կիրակոս աղայի տուն, նրա կինը արհամարհական եղանակով նրան ոտքից գլուխ տնտղեց ու տհաճ եղանակով նրան դիմելով ասաց.

— Ֆի՛, ինչքա՜ն կեղտոտ ես, քեզ այդպէս տուն թողնել չէր կարելի, բայց ինչ արած, X... աղայի խաթեր համար պէտք է ընդունել քեզ։

Եւ հէնց այդ X... աղայի խաթեր համար աղախնուն ներս կանչեց, հրամայեց Նաթերին բաղնիք տանել, մաքրել և հագցնել նոր շորեր և ապա յանձնել նրան տնային աշխատանք։ Նաթերը նկատեց տանտիկնոջ արհամարհական տոնը, նրա բիրտ վարմունքը տեսաւ, սակայն լուռ կացաւ և անդուլ կերպով սկսեց կատարել տանտիկնոջ ամեն մի հրամանը, նրա իւրաքանչիւր քմահաճութիւնը։

Սակայն տանտիկինը գոհ չէր նրանից ու տեղի անտեղի նախատում էր խեղճ աղջկան ու նրա սիրտը ցաւեցնում...

## IV.

Այդ դէպքից յետոյ շաբաթներ էին անցել և տանտիկինը, կարծես իր խիստ վարմունքից փոշմանած, դադարել էր Նաթերին նկատողութիւն անելուց և ծածուկ հետևելով նրա կատարած

*գործին համոզւում էր, որ Եսթերը իսկապէս կայտառ, աշխատասէր աղջիկ է, սակայն երբեմն երբեմն գործը թողնելով, ընկնում է մի տեսակ ինքնամոռացութեան մէջ, որի պատճառը գուցէ թէ գուշակում էր, բայց ըմբռնել չէր կարողանում։ Տանտիկինը տեսնում էր, թէ ինչպէս Եսթերի աչքերից լռելեայն վազում էր արցունքը ու կաթիլ-կաթիլ ընկնում մաքրած ու յղկած յատակի վրայ։*

*Արցունքի այդ կաթիլներն էին, որ տանտիկնոջ հոգու մէջ ինչ-որ շարժում էին կամաց, անշշուկ և այնտեղ առաջացնում խըղճի նման մի ինչ-որ զգացմունք։*

*Արդեօք խի՞ղճն էր զարթնում տանտիկնոջ բիրտ, կոպիտ սրտի մէջ թէ՞ մի ուրիշ զգացմունք—յայտնի չէր, միայն թէ նա մեղմել էր իւր վարմունքը դէպի Եսթերը։*

*Սակայն Եսթերը տանջւում էր, խիստ տանջւում, ու նրա կայտառ դէմքը օր աւուր թորշոմում։ Արցունքն էր նրա մշտական ընկերը, հառաչանքը նրա բաժինը, մինչև որ մի օր, Մարկոս աղան և իւր կինը գութ ունեցան դէպի նա և քաղցր խօսքերով դիմելով նրան հարցրին պատճառը։*

*Եսթերը կարծես դրան էր սպասում, կարծես կարօտ էր, որ բանայ իւր քրքրուած սիրտը, իւր վշտերն ասի։ Երբ լսեց տանտիկնոջ առաջին սփոփիչ խօսքը, յանկարծ ծունկ չոքեց նրանց առաջ և արտասուքով լի աչքերով ասաց.*

*—Լսիր, տիկին. ինձ մի մեղադրի, նայիր իմ ներքին աշխարհին, խոր շատ խոր, նայիր աչքերիս, չէ՞ որ ասում են աչքերը մարդու հոգու դուռն են կազմում, և դու կտեսնես իմ ներքին աշխարհը, կըլսես դրա ծանր հեծքը։ Տանջանքի և արհաւիրքի աշխարհն է ներկայացնում իմ սիրտը, իմ հոգին... Չե՞ս տեսնում... նայի՛ր, տե՛ս, թէ ինչպէս անմեղ մանուկները անգութ բռդերի սրերին զոհ են գնում, սիրուն աղջիկները առևանգւում, ջահէլ երիտասարդները սրի քաշւում, ծերերն ու կանայք տանջանքներով հոգին աւանդում... Միթէ չես լսում դու նրանց մահամերձ հեծկլտոցը, օրհասական ճիչը, աղիողորմ բառաչը...իսկ արիւնը, տե՛ս, ինչպէս նա վազում է ու կարմիր ներկում կանաչները...*

*—Խե՛ղճ Եսթեր, ասաց տանտիկինը, և նրա սրտի մէջ կարծես շարժուեց խիղճը։*

*—Եւ ահա այդ պատկերներն են, շարունակեց Եսթերը, որ երբեմն երբեմն մթագնած աչքերիս առաջ շարան-շարան անցնում են ու ինձ ձգում անհուն վշտի և տրտմութեան մէջ և ես ակամայից, հակառակ իմ կամքի, ձգում եմ գործը և նրանց նայում... նրանց, իմ սիրուն հայրենիքի աւերմունքին, հարազատներիս տանջալից վերջին հայեացքներին...*

*—Չե՞ս հաւատում, նայի՛ր, ահա կրծքիս վրայ բարբարոս քրդի սրի սպին է երևում, որը ինձ արիւնաքամ անելով մահի դուռն հասցրեց և հրաշքով միայն ազատուելով ձեր դուռը ձգեց։*

*Եսթերը բաց արաւ կուրծքը։ Այնտեղ քրդի բարբարոսութեան հետքն էր մնացել, որ իբրև բողոքի նշան մարդկութեան գաղանութեան, անջնջելի կերպով դրոշմուել էր կուսական անմեղ կրծքին...*

*Մարկոս աղան և իր կինը դեռ ապուշ-ապուշ նայում էին շարմաղ կրծքի վրայ սևին տուող վէրքի հետքին, երբ Եսթերը ծանր հևալով ծածկեց կուրծքը և շարունակեց.*

*—Օ՜, խղճացէ՛ք ինձ և մի՛ ամբաստանէք ծուլութեան մէջ։ Ես չեմ կարող այդ ահաւոր րոպէները մոռանալ։ Ես ծոյլ, աշխատանքից փախչող չեմ։ Գործն է իմ սիրած զբաղմունքը, աշխատելը՝ իմ զբաղմունքը, սակայն երբ հոգուս մէջ շարժւում է խոր վէրքը երբ նա սկսում է դուրս վիժել տաք մահր ու թարախ, ճ, այդ վայրկեաններին ես ինձ չեմ պատկանում... ծնկներս դողում են, միտքս մթագնում ու աչքերիս առաջ բացւում արհաւիրքի ու սոսկումի աշխարհը... Ահա, իմ աչքերի առաջ կրկին սկսւում է դժոխքը իւր զարհուրանքով... ներեցէք ինձ, ներեցէք, ահա փոքրիկ քոյրս է կանչում, որ քրդի նիզակի վրայ ճօճելով ինձ է նայում իւր զարհուրանքով լեցուն աչքերով և ինձանից միայն փրկութիւն սպասում...*

*Ու Եսթերը յանկարծ լռեց, բորբոքուած աչքերով նա դէպի դուրս նայեց ու զարհուրանքից ցնցուելով մի աղեկտուր ճիչ արձակեց, անշունչ փռուեց իւր տանտիկնոջ ոտքերի տակ...։*

*Թիֆլիս* *Բ. Այվազեան*

---

*Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ*
*Հրատարակիչ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ*

---

# Յայտարարութիւններ

Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Գոչոեանի Типографія „Прогрессъ“, Лорисъ-Меликовск. 1 Дозволено военной ценз.